Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1954

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս 2—52—78։



## ԶՐՈՒՅՑ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ
Պատմական գիտությունների թեկնածու

*Մեր Սոցիալիստական Հայրենիքը գտնվում է իր ուժերի ծաղկման շրջանում։ Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի իմաստուն առաջնորդությամբ վստահորեն և հաստատ քայլերով ընթանում է առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակը։*

*Կոմունիզմի կառուցման գործում մեծագույն ուժ է հանդիսանում պարտիայի, կառավարության և ժողովրդի մեծ ու անխորտակելի միասնությունը։*

*Պրոլետարական ռևոլյուցիայի հանճար Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված ու կոփված Կոմունիստական պարտիան մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճն է, սովետական ժողովրդի իմաստուն առաջնորդը, ղեկավար և ուղղություն տվող ու-*

ժը։ Սովետական ժողովուրդը իր բոլոր հաղթանակների համար երախտապարտ է Կոմունիստական պարտիային, իր փորձված ղեկավարին ու ավանգարդին։

Կոմունիստական պարտիայի բովանդակ պատմությունը, նրա ամբողջ հերոսական ուղին, բանվոր դասակարգի, աշխատավոր մասսաների ազատության և երջանկության գործին անձնուրաց ծառայելու հիասքանչ օրինակ է հանդիսանում։

Կոմունիստական պարտիայի հերոսական պատմությունը մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։ Կոմունիստական պարտիան ամրապնդվել և կոփվել է կալվածատերերի, կապիտալիստների, բանվորական շարժման ներսում նրանց գործակալների՝ էսեռների, մենշևիկների, անարխիստների, բուրժուական նացիոնալիստների դեմ մղված պայքարում։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի՝ համաշխարհային ռեվոլյուցիոն և բանվորական շարժման «Հարվածային բրիգադայի» ամբողջ պատմությունը լենինիզմի գաղափարների վառ տրիումֆն է։

Վ. Ի. Լենինի անունը անխզելիորեն կապված է մեր հարազատ պարտիայի ամբողջ պատմության հետ, աշխարհում առաջին



սոցիալիստական պետության՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության առաջացման ու զարգացման հետ։ Լենինի անունը դարձել է նոր աշխարհի ժողովուրդների խորհրդանիշը Արևմուտքից մինչև Արևելք, Հարավից մինչև Հյուսիս։

Կոմունիստական պարտիան լենինիզմի պարտիան է։

Պարտիան և Լենին—
Երկվորյակ եղբայրներ,
Մայր պատմության համար
Ո՞րն է արժեքավոր ավելի։
Մենք ասում ենք Լենին,
Եվ պարտիա ենք հասկանում էլի,
Ասում ենք՝
Պարտիա—
Հասկանում ենք Լենին։

Այսպես է գրել մեր դարաշրջանի մեծագույն պոետ Վլ. Մայակովսկին։

Բարձր ծածանելով լենինիզմի դրոշը, պահպանելով իր շարքերի պողպատե միասնությունը, Կոմունիստական պարտիան հենվելով պետության վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի վրա օրավուր ամրապնդում է Սովետական պե-

տությունը, նրա կառավարչական օրգանները։

Սովետական պետության արմատական հիմքը, նրա ուժի և անպարտելիության աղբյուրը բանվորների և գյուղացիների դաշինքն է, ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը, սովետական մարդկանց ջերմ հայրենասիրությունը և բարոյա-քաղաքական միասնությունը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ուժը աշխատավոր մասսաների, պատմության իսկական կերտողի հետ ունեցած կենսական և անխզելի կապերի մեջ է։ Պարտիան և կառավարությունն ուրիշ այլ շահեր չունեն, բացի ժողովրդի շահերից։ Պարտիայի ուժը, ինչպես նշեցինք, ժողովրդի հետ ունեցած կապերի մեջ է, իսկ ժողովրդի ուժը՝ պարտիայի շուրջն ունեցած համախմբվածության մեջ։ Կոմունիստական պարտիայի ամբողջ աշխարհայացքը, թեորիան ու պրակտիկ գործունեությունը տոգորված է մեծ հավատով մասսաների ստեղծագործական ուժի նկատմամբ։ Վ. Ի. Լենինը բարձր գնահատելով պատմության իսկական կերտողի՝ ժողովրդի նվիրվածությունը սոցիալիստական Հայրենիքին, աշխատավոր մասսաների գիտակ-



ցության և հայրենասիրության մեջ էր տեսնում նոր հասարակարգի ուժի և անպարտելիության գրավականը։ «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին,— ասել է Վ. Ի. Լենինը,— որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, Սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը»։

Մեր պարտիան ամենասերտ կերպով կապված է ժողովրդի հետ։ Սովետների և այլ մասսայական կազմակերպությունների՝ պրոֆմիությունների, կոոպերացիայի, կոմերիտմիության միջոցով նա բազմապիսի աշխատանք է կատարում աշխատավորների մեջ, նրանց կազմակերպում ու մոբիլիզացնում հաջողությամբ կենսագործելու պարտիայի և կառավարության որոշումները։

Պարտիայի Կանոնադրության մեջ ասված է, որ պարտիական կազմակերպությունները պարտավոր են օրավուր ամրապնդել կապը

մասսաների հետ, ժամանակին արձագանքել աշխատավորների պահանջներին ու կարիքներին, անպարտիական մասսաներին պարզաբանել, պարտիայի քաղաքականության ու որոշումների իմաստը:

Պարտիայի, կառավարության և ժողովրդի սերտ միասնության ուժը, մեր երկրի հերոսական բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի ջերմ հայրենասիրությունը փայլուն կերպով դրսևորվում է հինգերորդ հնգամյա պլանի կենսագործման, գյուղատնտեսության շեշտակի վերելքի կազմակերպման, խոպան ու խամ հողերի յուրացման համար մղվող համաժողովրդական պայքարում: Սովետական էկոնոմիկան վստահորեն ընթանում է անընդհատ վերելքի ուղիով: ՍՍՌՄ ազգային եկամուտը 1949 թվականից մինչև 1953 թվականն ընկած ժամանակաշրջանում ավելացել է 62 տոկոսով և 1953 թվականին ավելի քան 2 անգամ գերազանցել էր նախապատերազմյան մակարդակը: Այդ նույն ժամանակ մեր էկոնոմիկայի հիմքերի հիմքը հանդիսացող արդյունաբերությունը արագ թռիչք է կատարել իր զարգացման մեջ: Կառուցվել են 2500 արդյունաբերական ձեռնարկություններ, արդյունաբերական ֆոնդերը մեծացել



են ավելի քան մեկ ու կես անգամ, արդյունաբերության արտադրանքն աճել է 1,8 անգամ: Խոշոր աշխատանք է կատարվում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման գծով, կառուցվում են հզոր էլեկտրակայաններ: Մեծահանճար Լենինը սովորեցրել է, որ միայն այն ժամանակ, երբ ամբողջ երկիրը, արդյունաբերության և հաղորդակցության բոլոր ճյուղերը կենթարկվեն էլեկտրիֆիկացման՝ կարող է կառուցվել կոմունիստական հասարակություն:

Զինված հարազատ պարտիայի և կառավարության իմաստուն ցուցումներով մեր մեխանիզատորները, գյուղատնտեսության մասնագետները, սոցիալիստական գյուղի մարդիկ անօրինակ սխրագործություններ են կատարում: Պարտիան և կառավարությունը ոչինչ չեն խնայում գյուղատնտեսության շեշտակի վերելքն ապահովելու համար: Միայն ընթացիկ տարվա ինն ամսվա ընթացքում գյուղատնտեսությունը ստացել է 134 հազար տրակտոր (15 ձիու ուժանոցի հաշվով) 81 հազար բեռնատար ավտոմեքենա, 26 հազար հացահատիկային կոմբայն, 19 հազարից ավելի խոտհնձիչ, ինչպես նաև գյուղատնտեսական տասնյակ հազարավոր այլ մեքենաներ ու

գործիքներ։ Մինչև 1954 թվականի գարնանը խոպան ու խամ հողերի յուրացման շրջանները փոխադրվեցին 50 հազար տրակտոր (15 ձիու ուժանոցի հաշվով) և շատ այլ մեքենաներ։ Տասնյակ հազարավոր մարդիկ մեկնել են նոր հողերի յուրացման վայրերը և հերկել դարավոր խոպանը։ Զգալի հաջողություններ ձեռք բերվեցին հացահատիկային արտադրությունն ավելացնելու և անասնաբուծության ու գյուղատնտեսության մյուս բնագավառներում։ Կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից շուտ, մինչև նոյեմբերի 5-ը, 101 տոկոսով կատարեցին հացամթերումների պլանը։ Պետությանը հանձնվել և վաճառվել է 289 միլիոն փթով ավելի հացահատիկ, քան մինչև 1953 թվականի նույն օրը։ Երկրում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1953 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացավ 1,9 միլիոն գլխով, խոզերինը՝ 3,4 միլիոն գլխով, ոչխարներինը՝ 2,5 միլիոն գլխով։ Մինչև նոյեմբերի 5-ը երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները հերկել են 17 միլիոն 430 հազար հեկտար խոպան ու խամ հողեր, մինչդեռ պլանային առաջադրանքը 13 միլիոն հեկտար էր։

Ժողովրդի այդ սխրանքները պարտիայի



և կառավարությանը լիովին վստահություն են ներշնչում, որ 1956 թվականին նոր յուրացված խոպան ու խամ հողերում ցանքատարածությունները կհասնեն 28—30 միլիոն հեկտարի։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության մշակած ծրագրի իրագործման համար մղվող պայքարում վառ կերպով դրսևորվեցին միլիոնավոր կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների, ՄՏ կայանների և սովխոզների բանվորների և մասնագետների աշխատանքային հերոսությունն ու ստեղծագործական նախաձեռնությունը։ Գյուղատնտեսության հետագա զարգացման գործում ձեռք բերված հաջողությունները հնարավոր դարձան սոցիալիստական քաղաքի՝ բանվոր դասակարգի կողմից գյուղատնտեսությանը ցույց տրված հսկայական օգնության շնորհիվ։

Սովետական մարդու բարօրության, ամբողջ սովետական ժողովրդի բարգավաճման նկատմամբ հոգատարությունն օրենք է մեր պարտիայի և կառավարության համար։ Օրավուր բարձրանում է սովետական մարդկանց նյութական և կուլտուրական բարեկեցությունը, տարեցտարի սովետական պե-

տությունն ավելացնում է հատկացումները բնակարանային շինարարության, առողջապահության, ժողովրդական լուսավորության, գիտության և արվեստի զարգացման համար։

Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության և ժողովրդի մեծ միասնությունը իր կենսունակությունը դրսևորում է տնտեսական շինարարության և քաղաքականության բոլոր բնագավառներում։ Այն մեր երկրի խաղաղասիրական արտաքին քաղաքականության գրավականն է։ Սովետական ժողովուրդը, կոմունիզմ կառուցող ժողովուրդը, շատ լավ է գիտակցում, որ նա իր բոլոր հաջողությունները ձեռք է բերում Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն քաղաքականության շնորհիվ։

Ժողովրդի հետ սերտ միասնությամբ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ընթանում են դեպի նորանոր հաղթանակներ կոմունիզմի շինարարության մեծ գործում։

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ՋՐՈՒՅՑԸ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Գ. ՄՈՎՍԻՍՅԱՆ

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանը ռեսպուբլիկայի առաջավոր ձեռնարկություններից մեկն է։ Նա իր 1954 թըվականի արտադրական պլանը կատարել է ժամկետից շատ առաջ՝ նոյեմբերի 15-ին։ Իսկ լայն սպառման ապրանքներ արտադրելու գծով այս տարվա տասն ամսում արդեն հասել է 1955 թվականի ընթացքում նախատեսվող արտադրանքի թողարկման մակարդակին։ Հնգամյակի առաջին տարվա հետ համեմատած, գործարանում աշխատանքի արտադրողականությունը այս տարի բարձրացել է 74,5 տոկոսով, իսկ արտադրանքի թողարկումն՝ ավելի քան երեք անգամ։

Արտադրական պլանները կատարելու գործին հսկայական օգնություն են ցույց տալիս ագիտատորները։ Նրանցից շատերն ու-

նեն ագիտացիոն աշխատանքի տեսանելի փորձ և իրենց խելացի ու մտածված աշխատանքով բարձրացնում են բանվորների աշխատանքային խանդավառությունը, օգնում նրանց՝ ստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով կատարելու գործում։ Ահա, օրինակ, ագիտատոր Մարտին Թամիրօղլյանը։ Նա գործիքային ցեխի ագիտատորն է։ Իր ագիտացիոն զրույցը ավելի նպատակասլաց ու ներգործուն դարձնելու նպատակով, նա առաջին հերթին կենդանի փաստեր է բերում իրենց ձեռնարկությունից։ Այսպես. վերջերս անցկացրած զրույցներից մեկում, որի թեման էր՝ «Ինչպես հասանք արտադրական հաջողությունների», դիմելով ունկնդիրներին, նա ասաց.

— Մեր գործարանը այս տարվա իր արտադրական պլանը կատարեց ժամկետից մեկ ու կես ամիս շուտ՝ նոյեմբերի 15-ին։ Այժմ գործարանի կոլեկտիվը պարտավորություն է ստանձնել հնգամյա պլանը համախառն արտադրանքի գծով կատարել ժամկետից երկու ամիս շուտ և երկրին տալ մոտ չորս անգամ ավելի արտադրանք, քան ըստացվում էր 1950 թվականին։ Դրա հետ միասին՝ աշխատանքի արտադրողականությունը 1950 թվականի հետ համեմատած,



բարձրացնել 90 տոկոսով։ Դրանք շատ լուրջ պարտավորություններ են, որոնց կատարման համար յուրաքանչյուր բանվորից պահանջվում է համառ ու լարված աշխատանք։ Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին մանրամասնորեն պատմեց, թե ինչ է արել իրենց ցեխի կոլեկտիվը մրցությամբ ըստանձնած պարտավորությունները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։

— Դուք լավ եք հիշում,— ասում է ագիտատորը, որ տարեսկզբին, սոցիալիստական մրցության մեջ մտնելով դրոշմող 4-րդ ցեխի հետ, մենք պարտավորվել էինք տարեկան պլանը կատարել նոյեմբերի 7-ին։ Սակայն վերջերս կատարված ստուգումը ցույց տվեց, որ այդ ժամկետում մենք բավականին գերակատարել ենք մեր իսկ ստանձնած պարտավորությունները։

Ահա ձեզ մի քանի փաստական տվյալներ, որոնք վկայում են այդ մասին։ Ցեխը առաջին եռամսյակի պլանը համախառն արտադրանքի գծով կատարել է 120,2 տոկոսով, երկրորդ եռամսյակինը՝ 118,2 տոկոսով, երրորդինը՝ 120,9 տոկոսով և վերջին 11 ամսում աշխատավարձի ֆոնդից տնտեսել է 140 հազար ռուբլի։

Այդ տվյալները մեջ բերելուց հետո, ագիտատորը մանրամասն կանգ է առնում այն

պայմանների ու հանգամանքների վրա, որոնք նպաստեցին ստանձնած պարտավորությունների կատարմանը։

— Մեր հաջողությունների ամենաառաջին և ամենակարևոր պայմանը,— շարունակում է ագիտատոր Թամիրօղլյանը,—Հայրենիքի հանդեպ մեր ունեցած պարտքի գիտակցումն է։ Մեր երկրում չկա ավելի պատվավոր գործ, քան հայրենիքին ազնվորեն ծառայելը։ Մենք բոլորս լավ ենք հասկանում, որ մեր մշակած յուրաքանչյուր դետալը, խնայած յուրաքանչյուր գրամ մետաղը և աշխատաժամի ռացիոնալ օգտագործումը գնում է նպաստելու մեր երկրի հզորության է՛լ ավելի ամրապնդմանը, մթերքների ու լայն սպառման առարկաների առավել առատություն ստեղծելուն։

Մեր հաջողությունների մյուս գրավականը՝ դա տեխմինիմումի խմբակի գործունեությունն է, որտեղ ընդգրկված ցածր մասնագիտական կրթություն ունեցող բանվորները օր-օրի որակավորվելով հասնում են առաջավորների աստիճանին։ Մեջ բերեմ թեկուզ մեկ օրինակ։ Բոլորդ լավ եք ճանաչում երիտասարդ խառատ Լևոն Խաչատրյանին։ Նա ընդամենը վեց ամիս է, ինչ մեզ մոտ է աշխատում։ Մինչև սեպտեմբեր ամիսը նա իր օրվա պլանների կատարողականը հազիվ



էր կարողանում հասցնել 80—90 տոկոսի։ Կարճ ժամանակ հետո նա ընդգրկվեց տեխմինիմումի խմբակի մեջ։ Աշխատանքի պրոցեսում նրան սկսեց ընկերական օգնություն ցույց տալ անվանի խառատ Պարույր Առաքելյանը։ Շուտով դրությունը նկատելիորեն փոխվեց։ Հոկտեմբեր ամսվա պլանի կատարողականը նա արդեն հասցրեց 130 տոկոսի, իսկ նոյեմբերինը՝ 150 տոկոսի։ Այդ նույնը կարելի է ասել նաև Հայկ Ներսիսյանի, Արտյուշա Վարդազարյանի և մյուսների մասին, որոնք թե մասնագիտական դպրոցներ հաճախելով և թե անհատական կցումների միջոցով հասել են արտադրական բարձր ցուցանիշների։

Մեր հաջողությունների երրորդ գրավականը պետք է փնտրել աշխատանքային մի շարք պրոցեսներ մեխանիզացիայի ենթարկելու մեջ։ Բավական է ասել, որ մեր ցեխի բանվորներից միայն այս տարի իրենց ռացիոնալիզատորական-նորարարական խելացի առաջարկություններով հանդես են եկել 8 հոգի։ Նրանց առաջարկությունների արմատավորումը միայն վերջին 11 ամսվա ընթացքում գործարանին տվել է մոտ 300 հազար ռուբլու օգուտ։

Իր լավագույն ռացիոնալիզատորական առաջարկությամբ ցեխում հատկապես աչքի է

ընկնում փականագործ Բաղդասար Հովհաննիսյանը։ Նա մշակել է թիթեղի մնացորդներից գեներատորների և ղեկավարման վահանների ապահովիչ ցանցեր պատրաստելու նոր տեխնոլոգիա, որի դեպքում օգտագործվող մետաղից ոչ մի սանտիմետր չի կորչում և, ընդհակառակը, տալիս է նյութի հսկայական խնայողություն։ Նրա այդ առաջարկությունը ներկայումս լայն կիրառում է գտել Սովետական Միության գրեթե բոլոր նույնատիպ ձեռնարկություններում։ Ռացիոնալիզատոր ընկ. Հովհաննիսյանը պատրաստել է նաև տրանսֆորմատորի անջատիչ-միացուցչի ավելի պարզեցված ձև, որի դեպքում ալյումինե թանկարժեք մետաղը փոխարինվել է սովորական պլաստ մասսայով։ Այդ առաջարկության շնորհիվ այժմ զգալիորեն բարձրացել է անջատիչ-միացուցիչ հարմարանքի արտադրությունը, լավացել որակը և հարաբերականորեն իջել ինքնարժեքը։

Ցեխում աչքի է ընկնում նաև խառատ Պարույր Առաքելյանի գլանային ուղորդները նոր մեթոդով մշակելու առաջարկությունը։ Այդ մեթոդի առավելությունն այն է, որ տրանսֆորմատորների միջուկի գլանը, որն սկզբում պատրաստվում էր ալյումինե ձուլվածքից, պահանջում էր բարդ մշակում,



դժվար էր ձեռք բերվում և շատ թանկ էր նստում գործարանի վրա։ Ներկայումս այն փոխարինվել է երկաթյա բարակ թիթեղով, որը կրկնակի չափով իջեցնում է մետաղի արժեքը, նույնքան անգամ կրճատում նրա վրա աշխատելու ժամանակամիջոցը։ Այդ առաջարկության արմատավորումն ընթացիկ 10 ամսում տվել է 108 հազար ռուբլու օգուտ և հսկայական քանակի թանկարժեք մետաղի խնայողություն։

Նորարար Պ. Առաքելյանի ռացիոնալիզատորական այդ առաջարկությունը չվրիպեց ագիտատոր Թամիրօղլյանի ուշադրությունից և նա ժամանակին կարողացավ այն պրոպագանդել ու մասսայականացնել ցեխում, որը տվեց իր լավագույն արդյունքը։

Ագիտատորի օգնությամբ ցեխի բանվորների առաջ կազմակերպվեց Առաքելյանի ելույթը։ Հասարակ, շարքային բանվորի համոզիչ ու կոնկրետ օրինակներով հագեցված ելույթը շատ խոր տպավորություն թողեց ունկնդիրների վրա։ Որոշ ժամանակ անց, հետևելով նրա օրինակին, իրենց ռացիոնալիզատորական առաջարկություններով հանդես եկան բանվորներ Վ. Տիրինյանը և Թ. Ամիրխանյանը։ Իրենց աշխատանքում արմատավորելով Առաքելյանի այդ առաջավոր մեթոդը՝ խառատներ Կ. Բաբաջանյանը, Վ.

Ղազարյանը և ուրիշներ, իրենց օրվա առաջադրանքները ներկայումս կատարում են 300—350 տոկոսով, իսկ առանձին դեպքերում՝ 400—450 տոկոսով։

*Զրույցի վերջում ագիտատորը կանգ առավ նաև արտադրության վերելքին նպաստող մի շարք այնպիսի կարևոր հարցերի վրա, ինչպիսին բանվորների կուլտ-կենցաղային պայմանների բարելավումն է, աշխատանքի տեղի ճիշտ նախապատրաստումը և աշխատանքի ժամանակի խստագույն ռացիոնալ օգտագործումը։ Բացահայտելով ցեխում դեռևս գոյություն ունեցող առանձին թերությունները, վերջում ավելացրեց.—սոցիալիստական մրցությամբ մեր ստանձնած պարտավորության մեջ նշված է, որ ցեխի բանվորները լարելով իրենց ողջ ուժերը, կձգտեն 1955 թվականի մայիսի 1-ը դիմավորել արտադրանքի բոլոր տեսակների գծով հնգամյա պլանը լրիվ կատարած և գործարանի մասշտաբով նվաճել առաջին տեղը։ Դրան հասնելու համար, մենք ունենք բոլոր հնարավորությունները։*

*Ոգևորված ագիտատորի թևավոր ու համոզիչ խոսքերից, ունկնդիրները միահամուռ խոսք տվին պատվով կատարել ստանձնած պարտավորությունները։*

---

## ԱՇԽԱՏԵՆՔ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

**Մեղրիի շրջկենտրոնի Ստալինի անվան կոլտնտեսության ագիտատոր Խ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ զրույցն ունկնդիրների հետ**

*Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակից, ագրոնոմ-ագիտատոր Խ. Խաչատրյանը հաճախակի ագիտացիոն զրույցներ է կազմակերպում կոլտնտեսականների համար գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի մասին և տեղական օրինակներով ցույց է տալիս այն ուղիները, որոնցով կարելի է ստանալ բարձր բերք։ Վերջերս նա իր հերթական զրույցն անցկացրեց կոլտնտեսության երրորդ բրիգադայում։ Նրա այդ զրույցը նվիրված էր առավել բարձր բերքատվության հասնելու նպատակին։ Ագիտատորը, որ նախօրոք լավ էր պատրաստել իր ասելիքը, զրույցն սկսեց այսպես,—ընկերներ, ձեզ հայտնի է, որ անցյալ տարի մեր կոլտնտեսությունը արտադրության մի շարք բնագավառներում բարձր ցուցանիշնե-*

րի հասնելու համար իրավունք ստացավ այս տարի մասնակցելու Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։ Իսկ դուք լավ գիտեք, որ այդ ցուցանիշները ձեռք են բերվել բոլորից քրտնաջան ու նըվիրված աշխատանքով։ Իմ ձեռքի տակ եղած թվական տվյալները, որոնք այժմ ես կհրապարակեմ, խոսելու են հենց այդ մասին։ Քանի որ մեր կոլտնտեսությունը ցուցահանդեսին մասնակցելու իրավունք է նվաճել իր անցյալ տարվա ձեռք բերած հաջողությունների համար, ուստի ես տկզբում կբերեմ 1953 թվականի տվյալները։ Այսպես. կոլտնտեսությունը 1953 թվականին պետական պլանով նախատեսված 74 կիլոգրամի փոխարեն գրենայի մեկ տուփից միջին հաշվով ստացել է 81,8 կիլոգրամ բոժոժ, պտղատու ծառերի յուրաքանչյուր հեկտարից 80-ի դիմաց՝ 103 ցենտներ միրգ, իսկ խաղողից՝ 147 ցենտներ բերք։ Եվ այդ այն ժամանակ, երբ պլանով նախատեսված է եղել ընդամենը 90 ցենտներ։ Պարզ է, որ այդ ցուցանիշներն իրենց հերթին նպաստել են կոլտնտեսության եկամուտների ավելանալուն, որը դրամական արտահայտությամբ կազմել է երկու միլիոն 790.000 ռուբլի։



Ինչ խոսք, որ մեր կոլտնտեսությունը իր եկամտի այդ երեք կարևոր ճյուղերում այս տարի հասել է է՛լ ավելի բարձր արդյունքների։ Բավական է ասել, որ գրենայի նույն մեկ տուփից նա ստացել է 83,1 կիլոգրամ բոժոժ, պտղատու ծառերի մեկ հեկտարից՝ 106 ցենտներ միրգ, խաղողից՝ 200 ցենտներ բերք։ Այդ ցուցանիշները մեզ իրավունք են տալիս ասելու, որ մենք եկող տարի նույնպես կարող ենք մասնակցել Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին։

Հիմա էլ ասենք,— շարունակում է ագիտատորը,— թե ինչպես ենք աշխատել, ի՞նչ ենք արել, որ հասել ենք բարձր բերքատվության։ Հենց այդ հարցի վրա է, որ այժմ ես պետք է գրավեմ ձեր ուշադրությունը։ Բարձր բերք ստանալու ամենաառաջին գաղտնիքը պետք է փնտրել գործը լավ հասկանալու և այն լավ կատարելու մեջ։ Պետք է ասել, որ մեր գրեթե բոլոր կոլտնտեսականներն էլ գործից լավ են գլուխ հանում։ Մեր ամենօրյա աշխատանքում հաճախ մեզ օգնության է հասնում սովետական առաջավոր միչուրինյան գիտությունը և ագրոկոմպլեքսի խստիվ կիրառումը։ Մենք երբեք լավ արդյունքի չէինք հասնի, եթե պտղատու այ-

գիների միջշարային տարածությունները աշնանը և գարնանը ժամանակին չփխրեցնեինք, տարեկան երկու անգամ տեղական ու հանքային պարարտանյութերով չպարարտացնեինք, վաղ գարնանը մասնագետ ու փորձված պտղաբույծների միջոցով ծառերը չձևավորեինք ու զանազան հիվանդությունների դեմ պահանջված բուժսպասարկում չձեռնարկեինք։ Ինչ վերաբերվում է խաղողի այգիներին, այս ուղղությամբ կատարված աշխատանքները հսկայական են։ Յուրաքանչյուր հեկտարի վրա, վազերի շրջակա տարածությունները փորելուց հետո, շաղ է տրվել 50 տոննա գոմաղբ և 10 ցենտներ ֆոսֆորական զանազան տեսակի պարարտանյութեր, չորսից-հինգ անգամ կատարվել է բուժում, երկուսից-երեք անգամ՝ քաղհան ու քոլքաշ, վազը-վազից ավելի հեռու ընկած տարածությունները լրացվել են անդալիզ անելու մեթոդով և որ ամենագլխավորն է, որոշ տարածությունների վրա կատարվել է արհեստական փոշոտում ու ստացվել հիանալի արդյունք։

Այսպես, այգեգործական երրորդ բրիգադայի երրորդ օղակի անվանի այգեգործ Հ. Հովհաննիսյանը արհեստական փոշոտման միջոցով 0,25 հեկտարից ստացել է 400



ցենտներ խաղող։ Նրա այդ առաջավոր փորձը եկող տարի, անշուշտ, ավելի լայն տարածում կգտնի մեր կոլտնտեսության այգեգործական մյուս բրիգադաներում ու օղակներում։

Ամփոփելով իր անելիքը, զրույցի վերջում ագրոնոմը բացահայտեց դեռևս գոյություն ունեցող մի շարք թերություններ։ Եթե մենք ուզում ենք,— ասաց նա,— մեր խաղողի ու պտղատու այգիներից ավելի շատ բերք ստանալ, դրա համար պետք է էլ ավելի լավ կազմակերպենք այգիների նորմատմամբ տարվող խնամքն ու պահպանությունը, միշտ հետևենք առաջավորների լավագույն օրինակին, ճիշտ կիրառենք ագրոկոմպլեքսը։

---

# ՍՍՌՄ ՊԱՅՔԱՐԸ ԱՏՈՄԱՅԻՆ ԶԵՆՔՆ ԱՐԳԵԼԵԼՈՒ ԵՎ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՐՃԱՏԵԼՈՒ ՀԱՄԱՐ

ՅՈՒ. ՎՈԼՍԿԻ

Միլիոնավոր մարդկանց հուզող չլուծված պրոբլեմների մեջ ամենաառաջին տեղերից մեկը պատկանում է ատոմային ու ջրածընային զենքը արգելելու և սպառազինությունները կրճատելու պրոբլեմին։

Սովետական Միությունը, որի խաղաղության քաղաքականությունը համապատասխանում է ժողովուրդների արմատական շահերին, հետևողականորեն ու համառ կերպով պայքարում է ատոմային զենքը և մասսայական ոչնչացման մյուս միջոցները արգելելու, ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու համար։

Ատոմային զենքի արգելման համար Միավորված Ազգերի Կազմակերպությունում Սովետական Միության պայքարն սկսվում է դեռ 1945 թվականի դեկտեմբերին Մոսկ-



վայում տեղի ունեցած Մեծ Բրիտանիայի, ՍՍՌՄ և Ամերիկայի Միացյալ Նահանգների արտաքին գործերի մինիստրների խորհրդակցությունից։ Այդ խորհրդակցությունում համաձայնություն ձեռք բերվեց, որպեսզի ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի քննարկմանը ներկայացվեն հանձնարարականներ Անվտանգության Խորհրդին կից հիմնելու մի հանձնաժողով՝ ատոմային էներգիայի հայտնագործման կապակցությամբ ծագող պրոբլեմները քննարկելու համար։

1946 թվականի հունվարին Գլխավոր Ասամբլեան միաձայն ընդունեց Մոսկովյան խորհրդակցության մշակած առաջարկները։ Գլխավոր Ասամբլեայի այդ որոշումը և դրանից հետո 1946 թվականի դեկտեմբերին ընդունած որոշումը, որոնցով հաստատվում և կոնկրետացվում էին ատոմային հանձնաժողովի խնդիրները, կանխորոշեցին ատոմային զենքը արգելելու և ազգային սպառազինություններից այն հանելու հարցը։

Սակայն ԱՄՆ-ի կառավարությունը ներկայացրեց ատոմային էներգիայի նկատմամբ միջազգային վերահսկողության իր պլանը, որը հայտնի է որպես՝ «Բարուխի պլան»։

ԱՄՆ-ի պլանն ըստ էության չէր նախատեսում ատոմային ռումբերի արտադրության դադարեցումը Միացյալ Նահանգների կողմից։ Դրա հետ մեկտեղ այդ պլանը պահանջում էր ստեղծել միջազգային վերահսկողության ինչ-որ օրգան, որին որպես սեփականություն պետք է հանձնվեն ատոմային հումքի բոլոր աղբյուրները և ատոմային ձեռնարկությունները։ Ամերիկյան պլանը ոչ մի հիշատակություն չէր պարունակում այն մասին, որ ազգային սպառազինություններից պետք է հանվի ատոմային զենքը, չնայած այն բանին, որ հենց դրանում էր կայանում Գլխավոր Ասամբլեայի 1946 թվականի հունվարի որոշման ամբողջ իմաստն ու ոգին։

Դրան պետք է ավելացնել և այն, որ ամերիկյան պլանը ըստ էության նախատեսում էր միջազգային վերահսկողության օրգանի ենթարկումը Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Միանգամայն բնական է, որ Սովետական կառավարությունը չէր կարող ընդունել ամերիկյան պլանը և հետևողական պայքար մղեց այն ուղղությամբ, որ կատարվեն Գլխավոր Ասամբլեայի 1946 թվականի որոշումները։ Ատոմային էներգիայի նկատ-



մամբ վերահսկողության հանձնաժողովում սովետական դելեգացիան, որպես առաջնահերթ միջոցառումներից մեկը, առաջարկեց քննության առնել միջազգային այնպիսի կոնվենցիա (պայմանագիր) կնքելու հարցը, որն արգելեր ատոմային զենքի արտադրումն ու գործադրումը մարդկանց մասսայական ոչնչացման համար։

Դրա հետ մեկտեղ ՍՍՌՄ-ն առաջարկեց որոշում ընդունել ատոմային էներգիայի արտադրության նկատմամբ միջազգային մասշտաբով վերահսկողության էֆեկտավոր սիստեմ սահմանելու մասին։

ՍՍՌՄ հետագա առաջարկներում, որոնք մտցվեցին 1947 թվականին, նախատեսվում էր վերահսկման և տեսչական ֆունկցիաների իրագործման համար ստեղծել միջազգային վերահսկիչ հանձնաժողով, վերջինիս օժտելով չափազանց լայն իրավունքներով ու լիազորություններով, այդ թվում՝ այնպիսի իրավունքով, որ նա ազատ մուտք ունենա ատոմային հումքի ու նյութերի արտադրության, պահպանման, ինչպես նաև ատոմային էներգիայի շահագործման ամեն մի ձեռնարկությունում։

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի 1948 թվականի երրորդ սեսիայում Սովետական

Միությունն առաջարկեց միաժամանակ կընքել երկու կոնվենցիա՝ ատոմային զենքի արգելման վերաբերյալ և վերահսկողության վերաբերյալ։ Դա մի կարևոր քայլ էր ատոմային զենքի արգելման հարցի լուծման ճանապարհին։

Սակայն Սովետական Միության այս պարզ ու հստակ առաջարկները, որ պաշտպանություն էին գտնում միլիոնավոր հասարակ մարդկանց կողմից, միմյանց հետևից մերժվեցին ամերիկա-անգլիական բլոկի կողմից։ Նման քաղաքականության հետևանքով ՄԱԿ-ի ամերիկա-անգլիական մեծամասնությունը բանն այնտեղ հասցրեց, որ ատոմային էներգիայի վերահսկողության հանձնաժողովը 1949 թվականի ամառը փաստորեն դադարեց գոյություն ունենալուց։

Ինչո՞վ է բացատրվում ԱՄՆ-ի կառավարող շրջանների նմանօրինակ դիրքը, ինչի՞ վրա են նրանք հույս դնում, համառորեն մերժելով սովետական առաջարկները։

Չնայած այն բանին, որ Սովետական Միությունը հայտնագործեց ատոմային ռումբի արտադրության գաղտնիքը, Ամերիկայի Միացյալ Նահանգները հույս ունեին, թե իրենք առաջ կանցնեն ՍՍՌՄ-ից ատո-



մային ռումբերի քանակով ու որակով և կդառնան ջրածնային ռումբի արտադրության մոնոպոլիստներ։ Բայց, ինչպես հայտնի է, ատոմային և ջրածնային էներգիայի ասպարեզում մեր երկրի ձեռք բերած հաջողություններից հօդս ցնդեցին այդ պատրանքները։ Միացյալ Նահանգները դադարեցին ինչպես ատոմային, այնպես էլ ջրածընային ռումբերի արտադրության մոնոպոլիստներ լինելուց։ Թվում էր, թե դա սառը ջուր կլցներ ամերիկյան չափը կորցրած քաղաքագետների գլխին։ Բայց այդպես չեղավ։

1950 թվականի դեկտեմբերին սովետական դելեգացիան Գլխավոր Ասամբլեայի հինգերորդ սեսիայի քննարկմանը մտցրեց ՄԱԿ-ի ատոմային էներգիայի հանձնաժողովի աշխատանքը վերսկսելու բանաձևի նախագիծ, այն հաշվով, որ այդ հանձնաժողովն անհապաղ ձեռնարկեր ատոմային զենքի արգելման վերաբերյալ կոնվենցիայի նախագծի և ատոմային էներգիայի նկատմամբ միջազգային վերահսկողության վերաբերյալ կոնվենցիայի նախագծի մշակմանը։

Նկատի ունենալով այն հանգամանքը, որ Գլխավոր Ասամբլեայի իմպերիալիստական

մեծամասնությունը մերժեց այդ նախագիծը, սովետական դելեգացիան 1952 թվականի հունվարին ՄԱԿ-ի վեցերորդ սեսիայի քննարկմանը մտցրեց «Համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքի դեմ պայքարելու և ժողովուրդների միջև խաղաղությունն ու բարեկամությունն ամրապնդելու միջոցառումների մասին» նախագիծը։ Չնայած այն հավանությանը, որ արժանացան այդ պահանջները համաշխարհային հասարակական կարծիքի կողմից, ԱՄՆ-ի կառավարությունը դարձյալ հրաժարվեց ընդունել այդ առաջարկները։

Հենց ԱՄՆ-ի դիրքի հետևանքով էլ ատոմային զենքի արգելման վերաբերյալ բանակցությունները դեմ առան փակուղու, որը շարունակվեց մինչև 1953 թվականի դեկտեմբերը։ Շարունակ հավատարիմ մնալով իր խաղաղասիրական քաղաքականությանը, 1953 թվականի դեկտեմբերին Սովետական կառավարությունը պատրաստակամություն հայտնեց մասնակցելու պրեզիդենտ Էյզենհաուերի 1953 թվականի դեկտեմբերի 8-ի առաջարկի վերաբերյալ բանակցություններին։

Ամերիկյան պրեզիդենտի առաջարկը նախատեսում էր, որ համապատասխան պե-



տությունները իրենց պաշարներից ատոմային նյութերի որոշ մասը առանձնացնեն և դնեն միջազգային օրգանի տրամադրության տակ՝ խաղաղ նպատակներով օգտագործելու համար։

Սովետական կառավարությունն առաջարկեց, որ բանակցությունների ընթացքում միաժամանակ քննության առնվի Սովետական Միության առաջարկն այն մասին, որ համաձայնագրին մասնակցող պետությունները հանդիսավոր ու անվերապահ պարտավորություն ստանձնեն պատերազմական պայմաններում չօգտագործելու ատոմային, ջրածնային և մասսայական ոչնչացման այլ զենք։

Սովետական այդ առաջարկի նպատակահարմար ու հրատապ լինելն ակներև է։ Մինչդեռ ԱՄՆ-ի կառավարությունը դարձյալ բացասական դիրք բռնեց նաև այդ առաջարկի վերաբերմամբ։

Այնուամենայնիվ Սովետական կառավարությունը, ձգտելով հասնել միջազգային համաձայնության՝ ատոմային էներգիան խաղաղ կարիքների համար օգտագործելու վերաբերյալ հայտարարեց, որ ինքը ցանկանում է, որպեսզի երկու կառավարու-

թյունները շարունակեն կողմերի բռնած դիրքերը մոտեցնելու ջանքերը։

Դա իր արտահայտությունը գտավ սպառազինությունների կրճատման և ատոմային, ջրածնային ու մասսայական ոչնչացման զենքի այլ տեսակներն արգելելու հարցի վերաբերյալ կոնվենցիա կնքելու մասին այն նոր առաջարկի մեջ, որը Սովետական Միությունը սույն թվի սեպտեմբերի 30-ին մտցրեց ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի քննարկմանը։

Սովետական Միության առաջարկած կոնվենցիայի հիմքում դրված են Ֆրանսիայի և Անգլիայի այն առաջարկները, որոնք այդ պետությունները մտցրին Լոնդոնում ՄԱԿ-ի զինաթափման հանձնաժողովի ենթակոմիտեի նիստերի ընթացքում։ Սովետական առաջարկները նախատեսում են հետևյալ միջոցառումների միաժամանակյա անցկացումը. Պետությունները վեց ամսվա (կամ մեկ տարվա) ընթացքում կրճատում են իրենց սպառազինությունները, զինված ուժերը և ռազմական կարիքների համար պետական բյուջեից կատարվող հատկացումները համաձայնեցված նորմաների 50 տոկոսի չափով։ Սպառազինությունների և զինված ուժերի կրճատման պետական պար-



տավորությունների կատարմանը հետևելու համար Անվտանգության Խորհրդին կից ստեղծվում է միջազգային վերահսկիչ հանձնաժողով, որն իրավունք ունի անհրաժեշտ տեղեկություններ պահանջելու պետություններից սպառազինությունների և զինված ուժերի կրճատման միջոցառումների անցկացման վերաբերյալ։

Հաջորդ վեց ամսվա (կամ տարվա) ընթացքում պետություններն իրենց սպառազինություններն ու զինված ուժերը և ռազմական կարիքների համար պետական բյուջեից կատարվող հատկացումները կրճատում են համաձայնեցված նորմաների մնացած 50 տոկոսի չափով։ Դրանից հետո կատարվում է ատոմային, ջրածնային զենքի և մասսայական ոչնչացման զենքի այլ տեսակների իսպառ արգելումը՝ զենքի այդ տեսակների արտադրությունը դադարեցնելով և դրանք պետությունների սպառազինություններից լրիվին հանելով. եղած բոլոր պաշարներն օգտագործվում են բացառապես խաղաղ նպատակներով։

Դժվար չէ տեսնել, որ Սովետական Միության նոր առաջարկները զինաթափման և ատոմային պրոբլեմի գործը դնում են ռեալ հողի վրա, հատակ կերպով նշված են միջո-

ցառումների անցկացման ժամկետները. ատոմային, ջրածնային զենքի և մասսայական ոչնչացման զենքի այլ տեսակների իսպառ արգելման հետ միասին նախատեսվում է մնացած սպառազինության, զինված ուժերի և ռազմական կարիքների համար հատկացումների կրճատումը։ Առաջարկները միաժամանակ ելնում են բոլոր մասնակից պետությունների իրավահավասարությունից, արտոնություն չտալով կողմերից ոչ մեկին։

Սովետական Միության նոր քայլը խորին գոհունակության զգացմունքով դիմավորեց միջազգային լայն հասարակայնությունը։ «Ամբողջ աշխարհի խաղաղասեր պետությունները և ժողովուրդները,— գրում է չինական «Ժենմինժիբաո» թերթը,— ջերմորեն հավանություն են տալիս և պաշտպանում են Սովետական Միության առաջարկները...»։

Սակայն ամերիկյան ռեակցիոն մամուլը, դիտավորյալ կերպով աղավաղելով փաստերը, փորձում է պնդել, թե իբր սովետական առաջարկներում «ոչ մի նոր բան չկա»։ Ակնհայտ է, որ դա արվում է ԱՄՆ-ի որոշ շրջանների թելադրանքով, որոնց սարսափեցնում է ատոմային զենքի արգելման և սպա-



ռազինությունների կրճատման պրոբլեմի կարգավորման բուն իսկ հեռանկարը։

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի իններորդ սեսիայի աշխատանքի ընթացքում Կանադայի, Ֆրանսիայի, Սովետական Միության, Միացյալ Նահանգների և Անգլիայի դելեգացիաների միջև տեղի ունեցած բանակցությունների հետևանքով համաձայնություն ձեռք բերվեց, որ այդ հինգ տերությունների ներկայացուցիչները հանդես են գալիս որպես բանաձևի նախագծի համահեղինակներ հետևյալ հարցերի վերաբերյալ. «Բոլոր զինված ուժերի և բոլոր սպառազինությունների կարգավորումը, սահմանափակումը և համաչափ կրճատումը», «Սպառազինությունների կրճատման և ատոմային, ջրածնային ու մասսայական ոչնչացման զենքի մյուս տեսակների արգելման վերաբերյալ միջազգային կոնվենցիա (պայմանագիր) կնքելու մասին»։ Այդ բանաձևի հիմքում դրված է բանաձևի՝ կանադական դելեգացիայի նախնական նախագիծը, որի մեջ սովետական դելեգացիայի առաջարկով մտցվել են մի քանի էական փոփոխություններ։

Հոկտեմբերի 27-ին, հինգ տերությունների բանաձևի համատեղ նախագիծը միաձայն ընդունվեց Քաղաքական կոմիտեի բո-

լոր անդամների կողմից։ Համատեղ բանա- ձևի միահամուռ ընդունումը ունի կարևոր նշանակություն։ Բոլոր երկրների հասարա- կայնությունը մեծ գոհունակությամբ ըն- դունեց այդ հաղորդագրությունը։ Աշխարհի ժողովուրդները հասկանում են, որ բանակ- ցությունների միջոցով հնարավոր է հասնել վիճելի շատ հարցերի լուծմանը, այդ թվում նաև սպառազինությունների կրճատման և ատոմային, ջրածնային ու մասսայական ոչնչացման զենքերի մյուս տեսակների ար- գելման հարցի լուծմանը։

Այժմ մասսայական ոչնչացման զենքի արգելման և սպառազինությունների կըր- ճատման հետ կապված միջազգային կարև- վորագույն պրոբլեմների դրական լուծման խնդիրը կախված է արևմտյան տերություն- ների բարի կամքից։ Դա տեսնում են բոլոր հեռատես քաղաքագետները և ամբողջ աշ- խարհի հասարակ մարդիկ։ Ապագան ցույց կտա, թե որքան անկեղծորեն են շահագըր- գըռված արևմտյան տերությունները, որ լուծվի մեր ժամանակի այդ կարևորագույն հարցը։

---

# ՑԱՆԿ

## 1954 ԹՎԱԿԱՆԻՆ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ







ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ







ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ
(Թվեր և փաստեր)

## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ







## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ



## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ





## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ



---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ



---


Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿ[illegible]-Ի

**1955 թվականի**

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է կապի գրասենյակների և «Սոյուզպեչատ»-ի բոլոր բաժանմունքներում։*

*Լույս է տեսնում ամսական 2 անգամ։*

**ՇՏԱՊԵՑԵՔ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ**

**«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»**


Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 24 1954 г.

*ՎՖ 14065 Պատվեր 1003 Տիրաժ 7950*

---

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան*
*Կնունյանցի № 8, 1954 թ., գինը 50 կոպ.։*